Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 4 ՄԱՐՏ 1948

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ»-Ի ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն.— *Երևան, Նալբանդյան 32, ՀԿ(բ)Պ Կենտկոմի Պրոպագանդայի և Ագիտացիայի բաժին, հեռախոս՝ 33—85։*



# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԿԻՆԸ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՐԳԻ ԱԿՏԻՎ ԿԱՌՈՒՑՈՂ

## (Կանանց միջազգային օրվա առթիվ)

*Սովետական ժողովուրդն այս տարի մարտի 8-ը՝ Կանանց միջազգային օրը դիմավորում է արտադրական և քաղաքական մեծ վերելքի պայմաններում։ Քաղաքներում և գյուղերում, կոլխոզներում և սովխոզներում, ամենուրեք, մեր մեծ Հայրենիքի բոլոր անկյուններում օրեցօր ավելի ու ավելի լայնորեն է ծավալվում սոցիալիստական մրցությունը հետպատերազմյան ստալինյան հնգամյակի պլանները ժամկետից շուտ կատարելու և գերակատարելու, պատերազմի հետևանքներն ամենաարագ կերպով վերացնելու համար։*

*Սովետական ժողովրդի ստեղծագործ մեծ աշխատանքի մեջ պատվավոր տեղ է պատկանում կանանց։ Չկա մեր երկրում հասա-*

բական և պետական գործունեության ոչ մի ասպարեզ, արդյունաբերության և գյուղատնտեսության, գիտության, կուլտուրայի և արվեստի ոչ մի բնագավառ, որտեղ սովետական կինն ակտիվ մասնակցություն չունենա և չպայքարի հարազատ Հայրենիքի բարօրության համար։ Երբեմնի ճնշված, անգրագետ, իրավազուրկ վիճակից, ներկայումս սովետական կինը մեր հասարակության մեջ պատվավոր տեղ է գրավում։

Մեծ է սովետական կնոջ դերը մեր մատաղ սերնդի դաստիարակության գործում։ Կոմունիստական պարտիայի և անձամբ ընկեր Ստալինի կողմից Հայրենիքի, իր ժողովրդի նկատմամբ անսահման սիրո ու նվիրվածության ոգով դաստիարակված սովետական կինը նույն ոգով դաստիարակում է աճող սերնդին։ «... Կանայք կազմում են մեր երկրի բնակչության կեսը,— ասում է ընկեր Ստալինը,— նրանք կազմում են աշխատանքի հսկայական բանակ, և նրանք կոչված են դաստիարակելու մեր երեխաներին, մեր ապագա սերունդը, այսինքն մեր ապագան։ Ահա թե ինչու մենք չենք կարող թույլ տալ, որ աշխատավորների այդ հսկայական բանակը քարշ տա իր գոյությունը խավարի ու տգիտության մեջ։ Ահա թե ինչու մենք պետք



է ողջունենք աշխատավոր կանանց աճող հասարակական ակտիվությունը և ղեկավար պոստերի համար նրանց առաջ քաշելը, որպես մեր կուլտուրականության աճման անկասկածելի նշան»։

Կոմունիստական հասարակակարգի ակտիվ կառուցողի այդ պատվավոր դիրքը սովետական կինը նվաճել է փառապանծ բոլշևիկյան պարտիայի ղեկավարությամբ, սիրելի առաջնորդ մեծ Ստալինի հայրական հոգատարության շնորհիվ։

Սովետական իշխանության տարիներում և բոլշևիկյան պարտիայի իմաստուն քաղաքականության շնորհիվ մեր երկրում կանանց համար ստեղծված են հասարակական-քաղաքական գործունեության լայն հնարավորություններ։ Սովետական կինը դարձել է առաջավոր, կուլտուրական, կրթված։ Տասնյակ ու հարյուր հազարավոր կանայք առաջ են քաշված և հաջողությամբ աշխատում են պարտիական, սովետական ու տնտեսական աշխատանքի պատասխանատու պոստերում։ Դժվար է գտնել այժմ մի պրոֆեսիա, որտեղ սովետական կինը հաջողությամբ չգործադրի իր ուժերը։ Երեկվա տնային տնտեսուհին, բատրակուհին սովորել է պետության կառավարել, դարձել է կոմունիստա-

կան հասարակակարգի ակտիվ կառուցող։

Սովետական կանայք բարձր գիտակցականության, կարգապահության, հերոսական աշխատանքի և խիզախության հիանալի օրինակներ ցույց տվին Հայրենական Մեծ պատերազմի տարիներին, երբ նրանց մի-ծակվեց արդյունաբերության և գյուղատնտեսության մեջ, ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում փոխարինել ռազմաճակատ մեկնած իրենց ամուսիններին ու եղբայրներին։

Պատերազմի տարիներին թիկունքում կատարած իր անձնվեր աշխատանքով սովետական կինը նվաճեց մեր Հայրենիքի աշխատավորների ջերմ երախտագիտությունը, որը հիանալիորեն արտահայտված է ընկեր Ստալինի հետևյալ խոսքերում. «Պատմության մեջ ընդմիշտ կմտնեն ֆաբրիկաներում ու գործարաններում, կոլխոզներում ու սովխոզներում աշխատանքի հիմնական ծանրությունն իրենց ուսերի վրա կրած սովետական կանանց ու մեր պանծալի երիտասարդության աշխատանքային անօրինակ սխրագործությունները։ Հանուն Հայրենիքի պատվի և անկախության սովետական կանայք, պատանիներն ու աղջիկները արիու-



թյուն ու հերոսություն են հանդես բերում աշխատանքի ճակատում»։

Հայրենական Պատերազմի ռազմաճակատներում էլ սովետական կանայք ցույց տվին Հայրենիքին անսահման նվիրվածության փայլուն օրինակներ։ Ամբողջ աշխարհին հայտնի են Ստալինգրադյան մեծ ճակատամարտին, Սևաստոպոլի, Լենինգրադի պաշտպանությանը մասնակցած սովետական կանանց հերոսական սխրագործությունները։ Սովետական ժողովուրդը հպարտությամբ և մեծագույն հարգանքով է պահպանում Հայրենիքի ազատության և անկախության համար հերոսաբար զոհված իր քաջարի դուստրերի՝ Զոյա Կոսմոդեմյանսկայայի, Լիզա Չայկինայի, լեգենդար «Երիտասարդ գվարդիայի» անդամներ Գրոմովայի, Շևցովայի, Մայյա Պեգլիվանովայի (Փահլևանյանի) և շատ ուրիշների հիշատակը։ Անմահ կմնան սովետական ժողովրդի խիզախ դուստրեր՝ սնայպերներ Նատաշա Կովշովան և Մարիա Պոլիվանովան, որոնք արիաբար մարտնչելով թշնամու դեմ, ոչնչացրին ավելի քան 300 ֆաշիստների։ Մարտերից մեկում ընկնելով թշնամու օղակի մեջ, նրանք մինչև վերջին շունչը կռվեցին, և մահը գերադասելով

ստրկությունից, իրենց ոչնչացրին նռնակներով:

Սովետական կառավարությունը բարձր գնահատեց Հայրենական պատերազմի մասնակից քաջարի կանանց սխրագործությունները: Սովետական Միության մոտ 120 հազար շքանշան ու մեդալ է հանձնված կանանց, որոնք արիություն և խիզախություն հանդես բերեցին թշնամու դեմ մղված մարտերում: 62 կանանց շնորհված է Սովետական Միության Հերոսի բարձր կոչում:

Սովետական կանայք ակտիվ մասնակցում են պետության կառավարմանը: Բավական է նշել, որ Սովետական Միության պետական իշխանության բարձրագույն օրգանի՝ ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատների թվում կա 277 կին: Ավելի քան 1700 կանայք ընտրված են միութենական և ավտոնոմ ռեսպուբլիկաների Գերագույն Սովետներում:

Այն ժամանակ, երբ բուրժուական երկրներում կանայք, կազմելով բնակչության կեսից ավելին, զրկված են ընտրական իրավունքներից, երբ կանայք միևնույն աշխատանքի համար ստանում են ավելի ցածր վարձատրություն, քան թե տղամարդիկ, ՍՍՌՄ-ում կինը տղամարդուն հավասար



իրավունքներ են տրվում տնտեսական, պետական, կուլտուրական և հասարակական-քաղաքական կյանքի բոլոր բնագավառներում: Այդ իրավահավասարության իրականացման հնարավորությունն ապահովվում է նրանով, որ Սովետական Միության մեջ կանայք տղամարդու հետ հավասար իրավունքներ են վայելում աշխատանքի, աշխատանքի վարձատրության, հանգստի, սոցիալական ապահովագրության, կրթության ասպարեզում, գոյություն ունի մոր և մանկան շահերի պետական պաշտպանություն, հղիության ժամանակ կանանց տրվում է արձակուրդ՝ պահպանելով աշխատավարձը, մորը և մանկանը մեզ մոտ իսպաս է դրված ծննդատների, մանկամսուրների ու մանկապարտեզների լայն ցանց, բազմազավակ մայրերին տրվում է նյութական օգնություն և այլն: ՍՍՌՄ-ում ավելի քան երկու միլիոն բազմազավակ մայրեր պարգևատրված են «Մայրական փառք» շքանշաններով ու մեդալներով: Սովետական երկրի ավելի քան 20 հազար մայրեր հպարտությամբ կրում են «Հերոսուհի մայր» մակագրությամբ ոսկե աստղը: Միայն 1947 թվականի ընթացքում բազմազավակ մայրերին վճարված է մոտ 6 միլիարդ ռուբլի պետական նպաստ:

Բոլշևիկյան պարտիան կանանց ակտիվ մասնակցությունը մեր երկրի հասարակական և քաղաքական կյանքում միշտ դիտել է իբրև սոցիալիստական շինարարության հաջողության գլխավոր պայմաններից մեկը։ Երբ մեր երկրի միլիոնավոր կանայք մասնակցեն սովետական իշխանության ձեռնարկած գործին, ասել է Վլադիմիր Իլյիչ Լենինը, այն ժամանակ սոցիալիստական շինարարությունը կլինի այնպես հաստատուն, որ մեր երկրի ոչ մի տեսակ արտաքին ու ներքին թշնամիներ սարսափելի չեն լինի Սովետական ռեսպուբլիկայի համար։

Սովետական Միության մեջ կանայք ակտիվ մասնակցում են երկրի տնտեսական ու քաղաքական կյանքին։ Հատկանշական է կին ինժեներա-տեխնիկական կադրերի հսկայական աճը ՍՍՌՄ-ում։ 1930 թվականին եղած 3600 կին մասնագետների փոխարեն, 1938 թվականին մեր ժողովրդական տնտեսության մեջ արդեն աշխատում էին 140 հազար մասնագետ կանայք, այսինքն ութը տարվա ընթացքում կին մասնագետների թիվը արտադրության մեջ աճեց 39 անգամ։

Սովետական ուսանողության 49,3 տոկոսը աղջիկներ են։ Մեր երկրում բարձրագույն կրթություն ունեցող մասնագետների



42,3 տոկոսը կազմում են կանայք։ Գիտահետազոտական ինստիտուտներում և լաբորատորիաներում աշխատում են 35 հազար կին գիտական աշխատողներ։ Ստալինյան մրցանակի լաուրեատ 205 կանայք բժշկական, ֆիզիկո-մաթեմատիկական, ֆիլոլոգիական, պատմական, գյուղատնտեսական գիտությունների, գրականության և արվեստի լավագույն ներկայացուցիչներն են։

Բոլորին հայտնի է պատմական գիտությունների դոկտոր Ա. Պանկրատովայի անունը։ ՍՍՌՄ Գիտությունների Ակադեմիայի թղթակից-անդամ Պ. Յա. Պոլուբարինովա—Կոչինան աշխատում է հիդրո-դինամիկայի բնագավառում, որը խոշոր տնտեսական-գործնական նշանակություն ունի։ Ա. Ա. Բլագոնրավովան մշակել է սինթետիկ ձյութերի մշակման մի նոր մեթոդ, որը նշանակալից չափով լայնացնում է արտադրության այդ բնագավառի հումքի բազան։ Իրենց բեղմնավոր աշխատանքով հայտնի են վաստակավոր բժշկուհի Օլգա Մաղուրովսկայան և շատ ու շատ ուրիշներ։

Ժողովրդական դատավորների 35 տոկոսը Սովետական երկրում կազմում են կանայք, տասնյակ կանայք մարզային և ռեսպուբլիկական դատարանների նախագահներ են,

ՍՍՌՄ Գերագույն դատարանի կազմում կա 14 կին։

ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Հրամանագրերով վերջին շրջանում բազմաթիվ կանանց՝ գյուղատնտեսության առաջավորների շնորհվել է Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում։ Տասնյակ հազարավոր կոլխոզային կանայք պարգևատրված են շքանշաններով ու մեդալներով։ Սովետական Միության մեջ կինը դարձել է իր հարազատ երկրի տերը, այն ժամանակ, երբ մինչև Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիան կինը, ինչպես էլ որ նա աշխատեր, ամենահետին մարդն էր համարվում հասարակության մեջ։

⁂

Այն ամենահսկայական փոփոխությունները, որոնք սովետական իշխանության օրով կատարվել են մեր երկրում կնոջ հասարակական և տնտեսական դրության մեջ, հատկապես ցայտուն են Հայաստանի պայմաններում։

Անուրախ, խավար, աղքատիկ կյանք էր վարում հայ կինը մինչև ռևոլյուցիան։ Հողից, անասունից և գոյության այլ միջոցներից զուրկ գյուղացիությունը մինչռևոլյուցիոն



Հայաստանում տնքում էր կալվածատերերի լծի տակ և կիսաքաղց գոյություն էր քարշ տալիս։ Այդ դառը կյանքի ամբողջ ծանրությունն ընկած էր գլխավորապես կնոջ վրա։ Կինն իրավազուրկ էր թե՛ ընտանիքում և թե՛ հասարակական կյանքում։ Կերակուր եփելը, տնտեսության և երեխաների մասին հոգալն էր միայն վիճակված կնոջը։ Հասարակական-քաղաքական կյանքում, գիտական աշխատանքում նրա որևէ մասնակցության մասին խոսք անգամ լինել չէր կարող։

Ընկեր Ստալինն այսպես է նկարագրում կնոջ վիճակը նախքան Հոկտեմբերյան ռևոլյուցիան. «Ի՞նչ էր ներկայացնում կինն առաջ, հին ժամանակ։ Քանի դեռ կինը հոր տանն էր, նա հաշվվում էր աշխատավորներից այսպես ասած վերջինը։ Աշխատում էր նա հոր համար, աշխատում էր առանց ձեռքերը ծալելու, և հայրը դեռ նախատում էր նրան, թե «ես եմ քեզ կերակրում»։ Երբ նա ամուսնանում էր, աշխատում էր ամուսնու համար, աշխատում էր այնպես, ինչպես ստիպում էր նրան ամուսինը, և դարձյալ ամուսինն էլ էր նրան նախատում, թե «ես եմ քեզ կերակրում»»։

Բայց այդ բոլորն արդեն հեռավոր անցյալի գիրկն է գնացել։ Այդ բոլորը մղձավանջային երազ է թվում այժմ, սովետական իշխանության օրով, երբ սովետական կնոջ յուրաքանչյուր օրը լի է հասարակական-քաղաքական և գիտական բազմազան գործունեությամբ։

Մեր երկրի կյանքում կատարված հոյակապ փոփոխությունների շնորհիվ երբեմնի իրավազուրկ հայ կինը ներկայումս դարձել է հասարակական կյանքի ակտիվ կառուցող, պետական գործիչ։ Մեր սոցիալիստական Հայրենիքի պետական իշխանության բարձրագույն օրգանի՝ ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատների թվում մենք տեսնում ենք հայ ժողովրդի փառապանծ դուստրեր՝ ՍՍՌ Միության ժողովրդական արտիստուհի Հայկանուշ Դանիելյանին, ՀԿ(բ)Պ Իջևանի շրջկոմի քարտուղար Նունիկ Թուխիկյանին, Էջմիածնի շրջանի Վ. Խաթունարխ գյուղի կոլխոզի նախագահ Ռեբեկա Ղարիբյանին, Բերիայի շրջանի Շահումյանի անվան կոլխոզի նախագահ Նազանի Գալստյանին, Կիրովականի Քիմիական գործարանի բանվորուհի Անիչկա Գյոզչյանին։

Կանայք պատվավոր տեղ են գրավում



Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատների շարքում, որտեղ նրանց թիվը հասնում է 75-ի, կազմելով Ռեսպուբլիկայի գերագույն օրգանում հայ ժողովրդի ընտրյալների ընդհանուր թվի 27,9 տոկոսը։ Վերջերս տեղի ունեցած՝ Հայկական ՍՍՌ աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների ընտրությունների ժամանակ գյուղական, ավանային, շրջանային և քաղաքային Սովետներում ընտրված 12.198 դեպուտատներից 4070-ը կանայք են։

Շատ կանայք ակտիվ աշխատանք են կատարում մեր ռեսպուբլիկայի արդյունաբերության մեջ, իրավամբ համարվելով արտադրության առաջավորներ։

Ինժեներ Մարիա Բաբաջանյանը երկար ժամանակ աշխատում էր մի հետաքրքիր պրոբլեմի վրա — նա փորձում էր էլեկտրականությունն օգտագործել իբրև ջերմային էներգիայի աղբյուր ապակու ձուլման համար։ Այդ մեծ աշխատանքն ավարտվեց հաջողությամբ։ Առաջին անգամ Երևանի Ապակու գործարանում ապակի ստացվեց էլեկտրական էներգիայի գործադրման միջոցով։ Ներկայումս Մարիա Բաբաջանյանն աշխատում է իբրև Երևանի Ապակու գործարանի դիրեկտոր։

Ինժեներ Լյուսյա Հովհաննիսյանն աշխատում է ռեսպուբլիկայի խոշորագույն ձեռնարկություններից մեկի՝ Ս. Մ. Կիրովի անվան գործարանի տեխնիկական վերահսկողության բաժնի պետի պաշտոնում։ Երևանի կահույքի ֆաբրիկայի դիրեկտորն է Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ Սոնյա Սարվազյանը, Մահուդի ֆաբրիկայի գլխավոր ինժեներն է Մարգո Սեյանը։

Մեր ռեսպուբլիկայի ֆաբրիկաներում և գործարաններում աշխատում են շատ ու շատ հիանալի կանայք, որոնք ցույց տալով բոլշևիկյան աշխատանքի օրինակներ, պայքարում են ստալինյան նոր հնգամյակը չորս տարում կատարելու համար։ Այդպիսի առաջավոր ստախանովականներից է Յուղաբեր Ավետիսյանը, որն անցել է աշխատանքային փառավոր ուղի՝ շարքային բանվորուհուց մինչև Ծխախոտի ֆաբրիկայի ցեխի պետի պաշտոնը. նա 20 տարի անդուլ կերպով աշխատում է արտադրության մեջ։ Երևանի Ստալինյան ռայոնի աշխատավորներն իրենց արժանավոր դստերն ընտրեցին Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ։

Երևանի Կոշիկի 3-րդ ֆաբրիկայի ձևող բանվորուհի Մարիա Թումանյանը 1947 թվականին կատարեց երկու տարվա՝ 1947 և



1948 թ. թ. արտադրական պլանները և այժմ պայքարում է 1949 թվականի պլանի կատարման համար։ Նա մրցում է անվանի ստախանովական Մատրոսովի հետ, և 1947 թվին տնտեսեց մեծ քանակությամբ կաշի։ Այժմ ընկ. Թումանյանը սիստեմատիկորեն իր պլանը կատարում է 150-300 տոկոսով։ Նա ընտրված է Երևանի Քաղսովետի դեպուտատ։

Տրանսպորտում իր աշխատանքով աչքի է ընկնում շոգեքարշային մեքենավար Մանյա Աբրույանը։ Նա երկաթուղային տրանսպորտ եկավ Հայրենական պատերազմի տարիներին, իսկ այժմ մարդատար ծանր գնացքի մեքենավար է, աշխատում է առանց ավարիայի, սիստեմատիկաբար տալիս է վառելանյութի մեծ խնայողություն, նրա շոգեքարշը միշտ առողջ վիճակումն է, նա իր պլանները կատարում է 150-200 տոկոսով։ Մանյա Աբրույանը պարգևատրված է «Պատվո նշան» շքանշանով և «Պատվավոր երկաթուղայինին» կրծքանշանով։ Նա Լենինականի Քաղսովետի դեպուտատ է։

Երևանի Ձերժինսկու անվան Դազգահաշինական գործարանում է աշխատում Մարիամ Առաքելյանը։ Նա գործարանի լավագույն բազմադազգահավարներից է, աշխա-

տում է երեք դազգահի վրա և օրական կատարում է երկու նորմա։ Նույն գործարանի բանվորուհի Արմիկ Խաչատրյանն աշխատում է երկու դազգահի վրա և իր պլանը կատարում 180-250 տոկոսով։

Վարդուշ Պատուրյանն աշխատում է Երևանի Ավտոդողերի գործարանում, որպես ավտոդողեր հավաքող բանվորուհի։ 1947 թվականի պլանը նա կատարեց 1947 թ. օգոստոսին և այժմ սիստեմատիկաբար արտադրական առաջադրանքները կատարում է 150-160 տոկոսով։

Սովետական Հայաստանի գյուղատնտեսության առաջավորների մեջ պատվավոր տեղ է գրավում Թալինի շրջանի Ջիթհանքով գյուղի Բուդյոննու անվան կոլխոզի նախկին օղակավարուհի՝ 23-ամյա կոմերիտուհի Մարիամ Մարտիրոսյանը։ Գործադրելով առաջավոր ագրոտեխնիկայի նվաճումները, անվանի օղակավարուհին տասը հեկտար տարածության յուրաքանչյուր հեկտարից անցյալ տարի ստացավ 39,5 ցենտներ ցորենի բերք, որի համար ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Հրամանագրով նրան շնորհվեց Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում։ Հացահատիկի բարձր բերք ստանալու համար այս տարի Սոցիա-



լիստական Աշխատանքի Հերոսի կոչման արժանացած գյուղատնտեսության առաջավորների թվումն է Նոր Բայազետի շրջանի «Սպարտակ» կոլխոզի օղակավարուհի Սիրուն Ումրշատյանը։

Ահա կոլխոզային դաշտերի մեկ այլ աշխատավորուհի՝ Շողիկ Տոնոյանը։ Մանուկ հասակից նա կրել է չքավոր գյուղացու կյանքի բոլոր դառնությունները։ Բայց Հայաստանում սովետական իշխանություն հաստատվելով նրա համար նոր կյանք սկսվեց։ Ժողովուրդը սիրեց նրան անձնվեր աշխատանքի, ազնվության, Հայրենիքին նվիրվածության համար։ Եվ 1938 թվականին Շողիկ Տոնոյանն ընտրվեց Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ։ Նա բարձր է գնահատում իրեն ցույց տրված պատիվն ու վստահությունը։ Ջիթհանքովի գյուղսովետը, որ ղեկավարում է Շողիկ Տոնոյանը, արդեն տարիներ շարունակ մեր Ռեսպուբլիկայի լավագույն գյուղսովետներից է։ Հայ ժողովուրդը բարձր գնահատելով իր արժանավոր դստեր անձնվեր գործունեությունը, նրան կրկին ընտրեց Հայկական ՍՍՌ երկրորդ գումարման Գերագույն Սովետի դեպուտատ։

Լայնորեն օգտագործելով Ստալինյան

Կոնստիտուցիայի մեջ գրի առնված իրենց իրավունքները, Սովետական Հայաստանի կանայք հանդես են գալիս նաև որպես կուլտուրական խոշոր ուժ։ Սովետական Հայաստանի ինտելիգենցիայի մեջ մեծ հարգանք է վայելում Քիմիական գիտությունների դոկտոր, Ջրո-անասնաբուժական ինստիտուտի օրգանական քիմիայի ամբիոնի վարիչ Արաքսյա Բաբայանը։ Գիտական բեղմնավոր գործունեություն են ծավալում գյուղատնտեսական գիտությունների դոկտոր Դարյա Բաբայանը, բիոլոգիական գիտությունների դոկտոր, Հայկական ՍՍՌ Գիտությունների Ակադեմիայի Կենդանաբանական ինստիտուտի դիրեկտոր Մարգարիտա Տեր-Մինասյանը և ուրիշներ։

Ահա մեկ ուրիշ անխոնջ հասարակական գործիչ՝ Վերգուշ Հարությունյանը։ Մոտ քառորդ դար նա դաստիարակում է սովետական մանուկներին։ Այդ համեստ ուսուցչուհին մեծ սեր և հարգանք է նվաճել իր անդուլ աշխատանքով, դեպի երեխաներն տածած հոգատարությամբ,՝ անսահման նվիրվածությամբ՝ մեր Սովետական Հայրենիքին։ Բազմամյա ծառայությունների համար կառավարությունը մանկավարժության ֆրոնտի



անխոնջ մշակին շնորհել է վաստակավոր ուսուցչուհու պատվավոր կոչում։

Ավելի քան երկու տարի է անցել այն օրից, երբ հայրենադարձ հայերի առաջին խումբը ոտք դրեց սովետական հողի վրա։ Սովետական կառավարության և անձամբ հայ ժողովրդի լավագույն բարեկամ ու ազատարար Մեծ Ստալինի հոգատարության շնորհիվ արդեն ավելի քան 86 հազար հայեր, որոնք տարիներ շարունակ թափառում էին օտարության մեջ, հնարավորություն ստացան վերադառնալու Սովետական Հայաստան։ Հայրենադարձների մեջ կան մեծ թվով կանայք, որոնք հարազատ երկրում վայելում են Ստալինյան Կոնստիտուցիայով շնորհված իրավունքները։

«Մի բան, որ հատկապես զարմացրեց և մինչև հոգուս խորքը հուզեց ինձ,— ասում է հայրենադարձ Աննա Դեյրմենջյանը,— դա պետության մշտական հոգատարությունը և ուշադրությունն է բազմազավակ մայրերի նկատմամբ։ Ոչ մի տեղ, աշխարհի ոչ մի երկրում չկա այնպիսի հարգանք դեպի մայրությունը, ինչպիսին ես տեսա սովետական երկրում»։

Հայրենադարձ, ներկայումս Երևանի Մոլոտովի անվան Պետական համալսարանի

ուսանողուհի Մելինե Մանուչյանը գրում է. «Ես լի եմ հպարտությամբ և երջանկությամբ այն բարձր պատվի համար, որ շնորհեց ինձ հայրենիքը, այնպես՝ջերմ ու սրտագին ընդունելով ինձ իր մեծ ընտանիքի մեջ։ Վերջապես ես ձեռք բերեցի ազատ կյանքի իրավունք, և հպարտությամբ կրում եմ սովետական քաղաքացու բարձր կոչումը»։

***

Սովետական կանայք ինչպես ստալինյան հնգամյակների տարիներին և Հայրենական Մեծ պատերազմում, այնպես էլ այժմ, հետպատերազմյան խաղաղ շինարարության ժամանակաշրջանում Հայրենիքին են նվիրում իրենց բոլոր ուժերն ու եռանդը։

Նրանք գիտեն, որ նոր հնգամյա պլանն սկզբից մինչև վերջը տոգորված է սովետական հերոս ժողովրդի համար բարեկեցիկ կյանք ստեղծելու, մեր սոցիալիստական Հայրենիքի պաշտպանունակությունն է՛լ ավելի ամրապնդելու գաղափարով, և որ այն կավարտվի լիակատար հաղթանակով։ Նրանք գիտեն, որ սովետական ժողովրդի առջև կանգնած է լուսավոր նպատակ՝ կոմունիզմը և որ դեպի այն տանող ուղին ստալինյան նոր հնգամյակի հաջող կենսագործումն է, Սոցիալիզմի երկրի ժողովրդական



տնտեսության հետագա զարգացումն ու ամրապնդումը։

Սովետական կանայք իրենց ամուսինների, եղբայրների և զավակների հետ միասին դեպի այդ վեհ նպատակն են ընթանում նույնպիսի համախմբվածությամբ, ինչպես նրանք ընթացան մեր սոցիալիստական Հայրենիքի ազատության և անկախության համար մղվող պայքարում։

Սովետական կառավարության, բոլշևիկյան պարտիայի և անձամբ ընկեր Ստալինի կողմից դեպի կինը ցուցաբերվող մշտական հոգատարությանը սովետական կանայք կըպատասխանեն աշխատանքի արտադրողականության բարձր ցուցանիշներով, գիտության, տեխնիկայի, արվեստի և կուլտուրայի բնագավառում իրենց նորանոր ստեղծագործական հաջողություններով, և բոլոր ուժերը կգործադրեն հետպատերազմյան ստալինյան հնգամյակը չորս տարում կատարելու համար։

Բերսիկ ԳՐԻԳՈՐՅԱՆ
ՀԿ(բ)Պ Երևանի կազմակերպության
Ստալինյան ռայկոմի քարտուղար

# ԿԱԶՄ ՈՒ ՊԱՏՐԱՍՏ ԴԻՄԱՎՈՐԵԼ ԳԱՐՆԱՆԱՑԱՆԸ

ՀամԿ(բ)Պ Կենտկոմի Փետրվարյան պլենումն առաջնակարգ նշանակություն տալով մեր երկրի գյուղատնտեսության ամենաարագ վերականգնմանն ու հետագա զարգացմանը, խնդիր դրեց սովետական ժողովրդի առջև՝ ստալինյան նոր հնգամյակում լիովին բուժել պատերազմի հետևանքով երկրի գյուղատնտեսությանը հասած վերքերը, ոչ միայն վերականգնել, այլև զգալիորեն գերազանցել գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության և անասնաբուծության մթերատվության նախապատերազմյան մակարդակը։

Սովետական Հայաստանի կոլխոզային գյուղացիությունը, բոլշևիկյան պարտիայի ղեկավարությամբ, անշեղորեն կենսագործելով մեծ Ստալինի ցուցումները և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի Փետրվարյան պլենումի



«Հետպատերազմյան ժամանակաշրջանում գյուղատնտեսության վերելքի միջոցառումների մասին» պատմական որոշումը, զգալի հաջողություններով փակեց անցյալ գյուղատնտեսական տարին։

Մտնելով Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռևոլյուցիայի երեսնամյակի պատվին երկրում ծավալված սոցիալիստական մրցության մեջ, Ռեսպուբլիկայի կոլխոզնիկները 1947 թվականի գարնան գյուղատնտեսական աշխատանքների սկզբին մեծ առաջնորդ Ստալինին ուղարկած իրենց նամակում նոր պարտավորություններ ստանձնեցին գարնանացանն օրինակելիորեն նախապատրաստելու և անցկացնելու, կոլխոզային դաշտերի բերքատվությունը և անասունների մթերատվությունն է՛լ ավելի բարձրացնելու գործում։

Ժամանակին և բարձր որակով մշակելով ցանքերն ու այգիները, բարելավելով անասունների խնամքն ու կաթնամթերքի մշակումը, Ռեսպուբլիկայի կոլխոզները հիմնականում կատարեցին ինչպես հացահատիկային և տեխնիկական կուլտուրաների բերքատվության, այնպես էլ անասունների գլխաքանակի աճման ու նրանց մթերատվու-

թյան բարձրացման համար առաջնորդին տված իրենց խոստումը։ 1947 թվականին, յուրաքանչյուր հեկտարից միջին հաշվով ստացվեց ավելի քան 12 ցենտներ հացահատիկ, 215 ցենտներ շաքարի ճակնդեղ, բարձրացավ նաև մյուս կուլտուրաների բերքատվությունը։

Գերակատարելով անասնաբուծության զարգացման 1947 թվականի պետական պլանը, Ռեսպուբլիկայի կոլխոզներն ապահովեցին անասունների գլխաքանակի աճման առաջադրանքները։ Անասնաբուծական ֆերմաներում խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակն աճեց 4,9 տոկոսով, մանր եղջերավոր անասուններինը՝ 11 տոկոսով, ձիերինը՝ 10,4 և խոզերինը՝ 24,9 տոկոսով։

Սովետական Հայաստանի կոլխոզնիկները 1947 թվականին, նախորդ տարվա համեմատությամբ մոտ մեկ ամիս շուտ և ավելի կազմակերպված անցկացրին բերքահավաքը։ Պետության սահմանած ժամկետից 45 օր շուտ կատարվեց հացամթերման առաջադրանքը։ Շարունակելով հացահատիկի հանձնումը, Ռեսպուբլիկայի կոլխոզներն ու սովխոզները պլանից ավելի պետությանը հանձնեցին



350 հազար ցենտներ հացահատիկ։ Գերակատարվեցին նաև շաքարի ճակնդեղի, կարտոֆիլի, բանջարեղենի և անասնապահական մթերքների հանձնման առաջադրանքները։

Գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության և անասնաբուծության մթերատվության բարձրացման համար ծավալված սոցիալիստական մրցությունից հաղթանակով դուրս եկան Սովետական Հայաստանի տասնյակ շրջաններ, հարյուրավոր կոլխոզներ, բրիգադաներ ու օղակներ, որոնք ոչ մի ջանք չխնայեցին բարձր բերք ստանալու համար։

Թալինի շրջանի կոլխոզները անվանի կոլխոզնիկուհի՝ Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Մարիամ Մարտիրոսյանի օրինակով, անձնվեր աշխատանքով ապահովեցին բարձր բերք։Ախուրյանի, Սիսիանի, Կոտայքի, Աշտարակի, Ն. Բայազետի, Ախտայի շրջանների կոլխոզները հացահատիկային կուլտուրաների յուրաքանչյուր հեկտարից ստացան միջին հաշվով 80—90 փութ բերք, ըստ որում Նոր Բայազետի շրջանի «Կարմիր Հոկտեմբեր» կոլխոզը 620 հեկտար աշնանացան կուլտուրաների յուրաքանչյուր հեկտարից ստացավ 16,5 ցենտներ, իսկ նույն շրջանի

«Սպարտակ» կոլխոզը 520 հեկտար աշնանացանի յուրաքանչյուր հեկտարից 13 ցենտներ ցորեն:

Ռեսպուբլիկայի բազմաթիվ կոլխոզներում բարձր էր նաև տեխնիկական կուլտուրաների բերքը: Սպիտակի, Արթիկի, Կիրովականի, Ախուրյանի շրջանի կոլխոզներում գերակատարվեցին շաքարի ճակնդեղի բերքատվության առաջադրանքները:

Մեր պարտիան և կառավարությունը բարձր գնահատեցին գյուղատնտեսության առաջավորների անձնվեր աշխատանքը: ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության այս տարվա փետրվարի 2-ի Հրամանագրերով Սովետական Հայաստանի գյուղատնտեսության 15 առաջավորներ ստացան Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի բարձր կոչում, 18 կոլխոզնիկներ պարգևատրվեցին Լենինի շքանշանով, 24 մարդ Աշխատանքային Կարմիր Դրոշի շքանշանով, 40 մարդ «Աշխատանքային արիության համար» մեդալով և 7 մարդ՝ «Աշխատանքային գերազանցության համար» մեդալով:

1947 թվականին ձեռք բերված հաջողությունները արդյունք են այն բանի, որ Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխա-



տողները, բոլշևիկորեն ձեռնամուխ լինելով ՀամԿ(բ)Պ Կենտկոմի Փետրվարյան պլենումի որոշումների կենսագործմանը, համառ պայքար ծավալեցին բարձր բերքի համար: Քրտնաջան աշխատանքի հետևանքով ձեռք բերված նվաճումներն անհրաժեշտ է ամրապնդել: Անցյալ գյուղատնտեսական տարվա հաջողությունները պարտավորեցնում են բոլշևիկորեն նախապատրաստվել ստալինյան նոր հնգամյակի երրորդ տարվա գարնանային դաշտային աշխատանքներին, այս տարի ավելի՛ բարձր բերք ստանալու համար:

Քննության առնելով «Հետպատերազմյան ժամանակաշրջանում գյուղատնտեսության վերելքի միջոցառումների մասին» ՀամԿ(բ)Պ Կենտկոմի Փետրվարյան պլենումի որոշումը 1948 թվականին իրագործելու միջոցառումների հարցը, Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմի 31-րդ պլենումը, իբրև գյուղատնտեսության բնագավառի հիմնական խնդիր նշեց գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության հետագա բարձրացումը, գյուղատնտեսական աշխատանքների մեքենայացման ծավալի ընդարձակումը, մեքենա-տրակտորային կայանների աշխատանքի բարելավումը, ինչպես նաև գյուղատնտեսական անա-

սունների գլխաքանակի ավելացումը և անասնաբուծության մթերատվության բարձրացումը։ Պլենումը խնդիր դրեց 1948 թվականին ռեսպուբլիկայում հացահատիկային կուլտուրաների բերքատվությունը բարձրացնել, հասցնելով հեկտարից մինչև 11,7—13,5 ցենտների, ցորենի ցանքատարածությունները ավելացնելով և հասցնելով հացահատիկային կուլտուրաների ցանքերի ընդհանուր տարածության մինչև 70 տոկոսին։

Գարնանային աշխատանքներին լավագույն կերպով նախապատրաստվելու համար, պլենումն առաջարկեց արագացնել տրակտորների, գյուղատնտեսական մեքենաների և ինվենտարի նորոգումը կոլխոզներում ու սովխոզներում, բարելավել քաշող ուժի խնամքն ու պահպանումը, ուժեղացնել գոմաղբն ու մոխիրը դաշտ փոխադրելու տեմպերը։

Ներկայումս Ռեսպուբլիկայի կոլխոզներում և ՄՏԿ-ներում եռանդուն աշխատանք է ծավալված 1948 թվականի գարնանային դաշտային աշխատանքները լավագույն կերպով նախապատրաստելու և անցկացնելու համար։



Ռեսպուբլիկայի կոլխոզները հիմնականում ապահովված են գարնանացանի համար անհրաժեշտ սերմացուով, սակայն այդ դեռ բոլորը չէ։ Սերմացուն անհրաժեշտ է համապատասխանեցնել սահմանված կոնդիցիային, զտել, մաքրել, նույնիսկ հատընտիր անել, ինչպես այդ անում էր Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Մարիամ Մարտիրոսյանը։ Լավ սերմացու ունեցար— լավ էլ բերք կստանաս։ Ժողովուրդը ճիշտ է ասում, թե «ինչ ցանես, այն կհնձես»։ Այս տարի հատուկ ուշադրություն պետք է դարձնել այնպիսի կարևոր կուլտուրաների վրա, ինչպիսիք են եգիպտացորենն ու լոբին, որոնք արժեքավոր և առատ բերքատու կուլտուրաներ են։

Գարնանացանի նախապատրաստության գործում կարևոր է մեքենաների և գյուղգործիքների նորոգումը, լծկանի կանոնավոր խնամքը։ Մեքենաները և գյուղգործիքները անհրաժեշտ է նորոգել ժամանակին, խնամքով և որակով, որովհետև գարնանացանի ժամանակ խափանված մեքենան, վատ նորոգված գործիքը կարող են փչացնել գործը, ձգձգել ցանքը։ Իսկ գարնանացանը սե-

զոնային գործ է, նա ուշացում չի սիրում»

Ընկեր Անդրեևը ՀամԿ(բ)Պ Կենտկոմի Փետրվարյան պլենումում տված իր զեկուցման մեջ ասաց. «Գյուղատնտեսությունն այնպիսի գործ է, որ եթե նախապատրաստությունը ձեռքից բաց թողնես, այդ նշանակում է՝ բաց կթողնես նաև բերքը։ Իսկապես ասած, բերքը նախապատրաստվում է մեկ տարի առաջ. ցելն ու ցրտահերկը չկատարեցիր՝ նշանակում է կորցրիր բերքը. ձմեռը գյուղատնտեսական մեքենաներն ու տրակտորները չնորոգեցիր, նշանակում է ձախողեցիր ցանքն ու բերքահավաքը, նշանակում է կորցրեցիր բերքի մի մասը»։

Բերքատվության բարձրացման համար կարևոր ձեռնարկում է հողի պարարտացումը։ Հողի ուժեղացումը սննդանյութերով, ապահովում է հարուստ բերքը. ուստի, որքան հնարավոր է, պետք է շատ սնունդ տալ հողին։ Նոր Բայազետի շրջանի «Կարմիր Հոկտեմբեր» կոլխոզի նախագահ, Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Հ. Գրիգորյանը, որն աշխատանքի մեծ փորձ ունի, պատմում է, թե ինչպես իրենք հողը պարարտացնում էին քիմիական պարարտանյութերով, այրված գոմաղբով, միջնակների



խամ հողով, ոչխարի փայինով, և թե ինչպես դրա շնորհիվ բարձր բերք ստացան։ Պետք է օրինակ վերցնել սոցիալիստական դաշտերի հերոսներից, որոնք ագրոնոմիական գիտությունը հարստացնում են անձնական փորձով, աշխատանքի նոր մեթոդներով ու եղանակներով, և առատ բերք են ըստանում։

ՀԿ(բ)Պ Կենտկոմի պլենումը հատուկ ուշադրություն հրավիրեց կոլխոզներում աշխատանքի կազմակերպման մեջ եղած զգալի թերությունների վրա։ Այս հանգամանքը պետք է ուշադրության կենտրոնում լինի այժմ, երբ կոլխոզներում տեղի է ունենում աշխատող ուժերի բաշխումը, բրիգադների և օղակների կոմպլեկտավորումը, աշխատանքի նորմաների մշակումը ընթացիկ գյուղատնտեսական տարվա համար։ Արտադրական բրիգադները և օղակները կազմելիս անհրաժեշտ է հաշվի առնել բարձր բերքի բրիգադների և օղակների հարուստ փորձը։

Մեր Ռեսպուբլիկայի կոլխոզային գյուղացիությունը, ՄՏ կայանների և սովխոզների աշխատողները ձեռնամուխ են եղել հետպատերազմյան ստալինյան հնգամյակի

երրորդ տարվա պլանների կատարմանը։ Բազմաթիվ կոլխոզային ժողովներում կոլխոզնիկներն ու կոլխոզնիկուհիները նոր պարտավորություններ են ստանձնում ապահովելու համար գյուղատնտեսության բնագավառում հնգամյակի կատարումը չորս տարում։

Սովետական կառավարության և Համ. Կ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի պատմական որոշումը դրամական ռեֆորմի և պարենային ու արդյունաբերական ապրանքների ազատ առևտրի մասին, պահանջում է է՛լ ավելի ընդարձակել ցանքերի տարածությունը, բարձրացնել սոցիալիստական դաշտերի բերքատվությունն ու անասնաբուծության մթերատվությունը, ավելացնել գյուղատնտեսական մթերքների արտադրությունը և դրանով իսկ է՛լ ավելի բարձրացնել մեր երկրի աշխատավորների նյութական բարեկեցությունը։

Կազմ ու պատրաստ դիմավորենք հետպատերազմյան ստալինյան հնգամյակի երրորդ տարվա գարնանացանը։

Ս. ՂԱԶԱՐՅԱՆ



## ԱԼԲԱՆԻԱՅԻ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՆ

Ալբանիան մեկն է Հարավ-Արևելյան Եվրոպայի այն երկրներից, որտեղ պատերազմի ընթացքում ստեղծվեցին, իսկ այնուհետև ամրապնդվեցին նոր հասարակական-քաղաքական կարգեր՝ ժողովրդական ռեսպուբլիկան։

Ալբանիան, որ գտնվում է Ադրիատիկ ծովի ափին, լեռնոտ երկիր է։ Նրա ընդհանուր տարածությունը հավասար է մոտ 28 հազար քառակուսի կիլոմետրի։ Բնակչությունը կազմում է 1 միլիոն 122 հազար մարդ։ Բնակչության մոտ 90 տոկոսը ալբանացիներն են, մնացած 10 տոկոսը հույներ, սերբեր, մակեդոնական սլավոններ, մասամբ թուրքեր և գնչուներ։ Գյուղական բնակչությունը կազմում է 80 տոկոս։ Բնակչության գլխավոր զբաղմունքն է անասնապահությունը և երկրագործությունը։

Ալբանական հողի ընդերքը հարուստ է այնպիսի օգտակար հանածոներով, ինչպես նավթը, քարածուխը, պղնձի և քրոմային հանքաքարը։

Ալբանիայի մայրաքաղաքն է Տիրանան, որն ունի մոտ 60 հազար բնակիչ։

Ստրատեգիական նպաստավոր դիրք գրավելով Բալկանյան թերակղզում, Ալբանիան շատ անգամ է ենթարկվել իմպերիալիստական պետությունների հարձակմանը։ Երկրորդ համաշխարհային պատերազմի ժամանակ Ալբանիան մյուս երկրներից ավելի շուտ ագրեսիայի ենթարկվեց իտալական ֆաշիստների կողմից։ 1939 թվականի գարնանը Մուսսոլինիի ֆաշիստական զորքերը, օգտվելով իրենց թվական գերակշռությունից և սպառազինության առավելություններից, օկուպացրին Ալբանիան։ Ալբանական թագավոր Ահմեդ Զոգոն ժողովրդին թողեց բախտի քմահաճույքին և փախավ Անգլիա։

1943 թվականի սեպտեմբերին Իտալիայի կապիտուլյացիայից հետո, Ալբանիա ներխուժեցին գերմանա-ֆաշիստական զավթիչները։ Հիտլերականներն այնտեղ հաստատեցին տեռորի, բռնության և ժողովրդի ֆիզիկական բնաջնջման ռեժիմ։ Օկուպանտներն իրենց



տիրապետության ժամանակաշրջանում Ալբանիայում ավերեցին շատ քաղաքներ և 1285 գյուղ, շարքից հանեցին արդյունաբերական ձեռնարկությունները, կամուրջները, ճանապարհները, կողոպտեցին ալբանական բանկի ոսկին, Գերմանիա և Ավստրիա տարան 28 հազար գլուխ խոշոր եղջերավոր անասուն, 16 հազար ձի, կողոպտեցին պարենամթերքի պահեստները, ոչնչացրին պատմական հուշարձանները։

***

Ալբանական ժողովուրդը չհաշտվեց օկուպանտների հաստատած «նոր կարգի» հետ։ Սովետական Բանակի անօրինակ պայքարով և Հարավսլավիայի ժողովուրդների հերոսական սխրագործություններով ոգեշնչված, ալբանական ժողովուրդը պայքարի դրոշ բարձրացրեց ընդդեմ իտալա-գերմանական օկուպանտների։ Կարճ ժամանակամիջոցում Ալբանիայի ժողովրդական-ազատագրական բանակի շարքերը մտան մոտ 70 հազար ալբանական հայրենասերներ։ Բանակի գլուխ, իբրև նրա գլխավոր հրամանատար, կանգնեց գեներալ-գնդապետ Էնվեր Խոջան, որը մեծ համբավ վաստակեց ֆաշիստական կողոպտիչների դեմ մղած մարտերում։ Ավելի քան

53 հազար հիտլերականներ իրենց գերեզմանը գտան Ալբանիայի տերիտորիայում։ Մոտ 28 հազար ալբանական հայրենասերներ քաջի մահով ընկան օկուպանտների դեմ մղած պայքարում։

Սովետական Բանակի հաջող առաջխաղացումը Բալկաններում 1944 թվականի աշնանը, Հարավսլավիայի ժողովրդա-ազատագրական բանակի հետ նրա համատեղ գործողությունները Ալբանիայի ժողովրդա-ազատագրական բանակին հնարավորություն տվին ծավալելու հարձակումը գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ։ 1944 թվականի նոյեմբերի 29-ին Ալբանիան մաքրվեց օկուպանտներից։

Ազգային-ազատագրական պայքարի ընթացքում ալբանական ժողովուրդը դնում էր դեմոկրատիայի հիմքերը, և ստեղծեց իշխանության նոր, դեմոկրատական օրգաններ՝ ներքևից մինչև վերև—տեղական ժողովրդական Սովետներ, դեմոկրատական կառավարություն և Հակաֆաշիստական վեչե, իբրև բարձրագույն օրենսդիր օրգան։

Իշխանության օրգանների հետ միասին, ազգային-ազատագրական պայքարի պրոցեսում Ալբանիայում ստեղծվեց մասսայական-



քաղաքական կազմակերպության՝ Դեմոկրատական ճակատը, որի գլուխ կանգնած է Էնվեր Խոջան։ Դեմոկրատական ճակատը պայքար է մղում երկրի հետագա դեմոկրատացման, ժողովրդական իշխանության օրգանների և դեմոկրատական կազմակերպությունների ամրապնդման համար։ Նա աշխատավորներին մոբիլիզացնում է օկուպանտների տնօրինության հետևանքներն ամենաարագ կերպով լիկվիդացնելու և Ալբանիայի ժողովրդական տնտեսության հետագա զարգացման համար։

Ներկայումս Ալբանիայի դեմոկրատական ճակատի մեջ մտնում են կոմունիստական պարտիան, ժողովրդական երիտասարդության կազմակերպությունը, պրոֆմիությունները, կանանց, ուսուցչական և այլ կազմակերպությունները։

Դեմոկրատական ճակատի ներսում, ինչպես և երկրի ամբողջ հասարակական-քաղաքական կյանքում ղեկավար դերը պատկանում է Ալբանիայի կոմունիստական պարտիային։ Կոմունիստական պարտիան, որը կազմակերպչորեն ձևավորվեց պատերազմի սկզբում, ազգային-ազատագրական պայքարի ընթացքում ամրապնդվեց ու կոփվեց և, ֆա-

շիզմի դեմ հաղթանակ տանելուց հետո, դարձել է ուժեղ ու միաձույլ մի կազմակերպություն։ Նա ալբանական ժողովրդի ճանաչված ղեկավարն է երկրի վերականգնման, նոր, դեմոկրատական Ալբանիայի կառուցման գործում։

Դեմոկրատական ճակատը և կառավարությունը, ընթանալով երկրի հետագա դեմոկրատացման ուղիով, 1945 թվականի դեկտեմբերին անցկացրին Հիմնադիր ժողովի ընտրություններ։ Ընտրությունները ընդհանուր և ուղղակի էին՝ գաղտնի քվեարկությամբ, որին մասնակցում էին 18 տարեկանին հասած բոլոր քաղաքացիները, առանց սեռի, ազգության, գույքային դիրքի, կրթության, դավանանքի խտրության։ Ալբանական ժողովրդի դավաճանները, որոնք համագործակցում էին օկուպանտների հետ, զրկվեցին ընտրություններին մասնակցելու իրավունքից։

Ալբանիայի պատմության մեջ առաջին իսկապես ազատ ընտրությունների օրը վերածվեց մասսայական ժողովրդական տոնի։ Դեմոկրատական ճակատը լիակատար հաղթանակ տարավ ընտրություններում։ Ընտրողների 95 տոկոսն իրենց ձայնը տվին դեմոկրա-



տական ճակատի թեկնածուների օգտին։ Ալբանական նոր կառավարության պրեմյեր-մինիստր ընտրվեց Էնվեր Խոջան։

1946 թվականի հունվարի 11-ին Ժողովրդական ժողովը, ընդառաջելով ժողովրդի իղձերին և օրինական պահանջներին, որոշում ընդունեց Ալբանիան Ժողովրդական ռեսպուբլիկա հռչակելու մասին։ Դրանից անմիջապես հետո, Ժողովրդական ժողովը համաժողովրդական քննարկման հետևանքով ընդունեց նոր, դեմոկրատական կոնստիտուցիա, որն օրենսդրականորեն ամրապնդեց երկրում կատարված սոցիալական-տնտեսական և քաղաքական վերափոխումները։

Կոնստիտուցիայի մեջ մատնանշվում է, որ «Ալբանիան Ժողովրդական ռեսպուբլիկա է, որտեղ ամբողջ իշխանությունը ժողովրդից է սկիզբ առնում և պատկանում է ժողովրդին»։

Կոնստիտուցիայի համաձայն սեփականությունն ունի երեք ձև՝ պետական (ժողովրդի ունեցվածք), կոոպերատիվ (կոոպերատիվ կազմակերպությունների սեփականություն) և մասնավոր (առանձին քաղաքացիների անձնական սեփականություն)։

Ընդերքի բոլոր հարստությունները, ջրերը, բնական աղբյուրները, անտառները, արոտա-

վայրերը, օդային հաղորդակցության միջոցները, փոստը, հեռագիրն ու հեռախոսը, ռադիոկայաններն ու բանկերը ժողովրդի ընդհանուր սեփականությունն են։

Պետությունը վերահսկում է արտաքին առևտրի նկատմամբ։ Հողը պատկանում է գյուղացիներին, այսինքն նրանց, ովքեր անմիջականորեն մշակում են այն։

Կոնստիտուցիան 18 տարեկանի հասած բոլոր քաղաքացիներին, առանց սեռի, ազգության, ռասայի, դավանանքի և կրթության աստիճանի խտրության, լայն իրավունքներ է տալիս երկրի ամբողջ հասարակական-քաղաքական կյանքում, ապահովում է խղճի և դավանանքի ազատությունը։ Ալբանական ժողովրդական ռեսպուբլիկայի քաղաքացիներին տրվում է աշխատանքի իրավունք և այդ աշխատանքի համապատասխան վարձատրություն, հանգստի, բուժման և կրթության իրավունք։ Տարրական կրթությունը պարտադիր է։

Այսպիսով, Ալբանական ռեսպուբլիկայի կոնստիտուցիան իսկական ժողովրդական կոնստիտուցիա է, որն արտահայտում է աշխատավոր մասսաների շահերը։ Կոնստիտուցիայի ընդունումով ավարտվեց իր ազատու-



թյան և անկախության համար ալբանական ժողովրդի մղած պայքարի երկարատև ժամանակաշրջանը։

Երկիրը ֆաշիստական զավթիչներից ազատագրելուց հետո անցած երեք տարվա ընթացքում կառավարությունը և Դեմոկրատական ճակատը մեծ աշխատանք են կատարել Ալբանիայի տնտեսության վերականգնման ու հետագա զարգացման ուղղությամբ։ Կառավարության խոշոր ձեռնարկումներից մեկն է ագրարային ռեֆորմի կիրառումը, որի հետևանքով հողն անցավ գյուղացիների ձեռքը, իսկ խոշոր հողատերերը՝ բայերը լիկվիդացիայի ենթարկվեցին։ Մոտ 50 հազար հողազուրկ և սակավահող գյուղացիներ հող ստացան։ Ստեղծված է 14 պետական ֆերմա, որոնց դաշտերում կիրառվում է բազմադաշտյան ցանքաշրջանառություն, օգտագործվում են տրակտորներ և գյուղատնտեսական այլ բարդ մեքենաներ։

Կառավարության մյուս կարևոր ձեռնարկումը հանդիսացավ արդյունաբերության ազգայնացումը։ Ներկայումս արդյունաբերությունը հաջողությամբ վերականգնվում և զարգանում է։ Վերականգնված են նավթահանքերը, պղնձաձուլական գործարանը, սա-

ֆալտի հանքերը, էլեկտրակայանները, արդյունահանվում է քարածուխ և քրոմային հանքաքար։ Հաջողությամբ կատարվում է Ալբանիայում առաջինը հանդիսացող՝ Դուրացցո—Էլբասան երկաթուղու կառուցումը։

Ազգայնացված և վերականգնված է պետական բանկը։ Կիրառված է դրամական ռեֆորմ, որի հետևանքով չեղյալ հայտարարվեցին հին դրամները և գործածության մեջ են մտել միասնական դրամանիշներ։ Պետությունը վերահսկում է ամբողջ առևտրի նկատմամբ։ Սկզբունքային փոփոխություններ է մտցված հարկային սիստեմի մեջ—սահմանված է պետական և մասնավոր ձեռնարկություններից գանձվող պրոգրեսիվ հարկ։ Կազմված է միասնական անդեֆիցիտ բյուջե։ Պետությունն անցել է տնտեսության բոլոր ճյուղերի պլանային կառավարմանը։ Ներկայումս մշակվում է երկրի վերականգնման և հետագա զարգացման հնգամյա պլանը։

Մեծ աշխատանք է կատարված լուսավորության, կուլտուրայի և առողջապահության բնագավառում։ Նոր Ալբանիայում գործում է 1068 տարրական, 3 հանրակրթական և 13 հատուկ միջնակարգ դպրոց։ Բացվել է երկրում առաջին բարձրագույն ուսումնական



հաստատությունը՝ Մանկավարժական ինստիտուտը։ Կազմակերպված է բնակչության միջից անգրագիտության վերացման դասընթացների լայն ցանց։ Միջնակարգ դպրոցներում մտցված է ռուսաց լեզվի դասավանդումը։ Լույս է տեսնում 16 անուն թերթ և 5 անուն ժուռնալ։ Մինչպատերազմյան Ալբանիան համարյա թե չուներ հիվանդանոցներ։ Ներկայումս երկրում գործում են հիվանդանոցներ, 25 հակամալարիային դիսպանսեր, 93 ամբուլատորիա։

Ալբանիայի ժողովրդական տնտեսության վերականգնման և զարգացման գործում մեծ օգնություն են ցույց տալիս Սովետական Միությունը և Հարավսլավիան։

Նոր, դեմոկրատական պետության կառուցման ճանապարհին ալբանական ժողովուրդը հարկադրված է հաղթահարել ռեակցիոն ուժերի կատաղի դիմադրությունը։ Ալբանական ռեակցիոներները, որոնց աջակցում են նրանց անգլո-ամերիկյան հովանավորները, հանդես են գալիս ալբանական կառավարության և նրա դեմոկրատական ձեռնարկումների դեմ։ Անգլո-ամերիկյան իմպերիալիստների ցուցումով հունական ֆաշիստները ձգտում են Ալբանիայից անջատել նրա հա-

*թավային մասը, նպատակ ունենալով իրագործել իրենց շովինիստական դիտավորությունները—այսպես կոչված՝ Մեծ Հունաստան ստեղծելու պլանները։ Նրանք սիստեմատիկաբար պրովոկացիաներ են կազմակերպում ալբանական սահմանների վրա, ձգտում են առիթ ստեղծել Ալբանիայի դեմ ագրեսիա ձեռնարկելու համար։*

*Սրելով հարաբերությունները Ալբանիայի հետ, արհեստականորեն ստեղծելով զանազան կոնֆլիկտներ, Անգլիան և ԱՄՆ-ը ձգտում են վարկաբեկել ալբանական կառավարությունը, ընդդիմանում են Ալբանիան Միավորված ազգերի կազմակերպության մեջ ընդունելուն։*

*Սովետական Միությունը հետևողականորեն պաշտպանում է Ալբանիայի արդարացի պահանջները, նրան ցույց է տալիս եղբայրական օգնություն։*

*Ալբանական ժողովուրդը, չնայելով իր արտաքին ու ներքին թշնամիների նենգ ոտնձգություններին, վստահորեն առաջ է ընթանում սոցիալիստական զարգացման համար անհրաժեշտ նախադրյալներ ստեղծելու ուղիով։*

*Պ. ՄԱՆՉԽԱ*

## Ի՞ՆՉ ԿԱՐԴԱԼ ԿԱՆԱՆՑ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՕՐՎԱ ԱՌԹԻՎ


Վ. Ի. ԼԵՆԻՆ.— Աշխատավորուհիների Միջազգային օրվա առթիվ։ *Պետքաղհրատ, 1941 թ.։*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Ճառ հարվածային կոլխոզնիկների Համամիութենական առաջին խորհրդակցությանը։ *«Լենինիզմի հարցերը», 11-րդ հրատ., էջ 501-516։*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Ճառ ճակնդեղի դաշտերի հարվածային կոլխոզնիկուհիների ընդունելության պարտիայի և կառավարության ղեկավարների կողմից։

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Սովետական Միության Հայրենական Մեծ պատերազմի մասին։ *Հայպետհրատ, 1946 թ.։*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Ճառ Մոսկվա քաղաքի Ստալինյան ընտրական օկրուգի ընտրողների նախընտրական ժողովում, 1946 թվականի փետրվարի 9-ին։ *Հայպետհրատ, 1946 թ.։*

ԻՈՍԻՖ ՎԻՍՍԱՐԻՈՆՈՎԻՉ ՍՏԱԼԻՆ։ Համառոտ կենսագրություն։ *2-րդ հրատ., էջ 128—133։ Հայպետհրատ, 1947 թ.։*

Վ. Մ. ՄՈԼՈՏՈՎ.— Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռևոլյուցիայի 30-ամյակը։ *Զեկուցում Մոսկվայի Սովետի հանդիսավոր նիստում, 1947 թ. նոյեմբերի 6-ին։ «Սովետական Հայաստան», 7 նոյեմբերի, 1947 թ.։*


---

Գինը 50 կոպ.

Պատ. խմբագրի տեղակալ՝
Կ. ՎԱՐԴԱՆՅԱՆ

ՎՖ 02495 Պատվեր № 191 Տիրաժ 8.000
Ստորագրված է տպագրության 3/III 1948 թ.
Պոլիգրաֆ. և Հրատ. վարչ. № 2 տպարան, Երևան

Отдел Пропаганды и агитации ЦК КП(б)
Армении
Блокнот Агитатора